Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 18 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86:


---

# ՊԱՐՏԻԱՅԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՀԶՈՐ ԶԵՆՔԸ

*Հոկտեմբերի 1-ին լրանում է «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց»-ի լույս ընծայման տասը տարին: Ամբողջ աշխարհում միլիոնավոր մարդիկ ուսումնասիրելով ընկեր Ստալինի այդ հիանալի աշխատությունը, իրենց միտքը հարստացնում են մարքսիստական-լենինյան գիտելիքներով, կոփվում են կոմունիստական հասարակակարգի հաղթանակի համար մղվող պայքարում: Աշխարհում ոչ մի գիրք այնպիսի մեծ չափերով չէր տարածվել ժողովրդի մեջ, ինչպես «Համառոտ դասընթաց»-ը, որի տիրաժը անցած տասնամյակի ընթացքում գերազանցել է 33 միլիոն օրինակից: Գիրքը լույս է տեսել 62 լեզուներով:*

*«Համառոտ դասընթաց»-ում սեղմ ձևով տրված է այն ամենը, ինչ գիտական սոցիալիզմի ուսմունքի մեջ մտցրել են Մարք-*

սը, Էնգելսը, Լենինը և Ստալինը։ Նրա մեջ ցույց է տրված, թե ինչպես է ստեղծվել, զարգացել ու ամրապնդվել բոլշևիկյան պարտիան, ինչպիսի թշնամիների դեմ է նա պայքար մղել, ինչպես է գլխավորելով մեր երկրի աշխատավոր մասսաներին հասել համաշխարհային պատմական հաղթության, տապալելով կապիտալիզմի լուծը և հաստատելով սովետական իշխանություն։

«Համառոտ դասընթաց»-ում ցույց է տրված, թե ինչպես քաղաքացիական պատերազմի բոցերի մեջ պարտիան սովետական ժողովրդին ոգեշնչում էր ինտերվենտների ու սպիտակ գվարդիականների դեմ պայքարելու համար, թե ինչպես ստեղծելով հզոր Կարմիր Բանակը՝ Լենինի և Ստալինի ղեկավարությամբ, նա ապահովեց պատմական հաղթանակը թշնամու դեմ։

Ստալինյան այս անմահ ստեղծագործության մեջ պատմվում է այն մասին, թե ինչպես բոլշևիկյան պարտիան մեր երկիրը փոխադրեց ինդուստրիալիզացիայի ուղու վրա, թե ինչպիսի հսկայական աշխատանքի շնորհիվ է, որ մեր Հայրենիքը անցյալում հետամնաց պետությունից դարձել է հզոր ինդուստրիալ տերություն։



«Համառոտ դասընթաց»-ը պատմում է այն մասին, թե ինչպես պարտիան գլխավորելով գյուղացիական ամենալայն մասսաներին, նրանց դուրս բերեց կոլտնտեսային կյանքի ուղին, թե այդ բանի համար ինչպիսի դժվարություններ հարկ եղավ հաղթահարել, թե ինչպես համատարած կոլեկտիվացման հիմքի վրա լիկվիդացվեց կուլակությունը— վերջին շահագործող դասակարգը մեր երկրում։

Մեր պարտիայի ամբողջ ստրատեգիան և տակտիկան կես դարի նրա ռևոլյուցիոն գործունեության ընթացքում, նրա պայքարը զանազան օպորտունիստների, կապիտուլյանտների, թերահավատների, դավաճանների դեմ, նրա մշտական կապը աշխատավոր մասսաների հետ, «Համառոտ դասընթաց»-ում շարադրված է ոգեշնչող ուժով և համոզիչ կերպով։

Բոլշևիկյան պարտիայի պատմության ուսումնասիրությունը մեր կադրերին զինում է հասարակական զարգացման օրենքների իմացությամբ, նրանց օգնում է կողմնորոշվել քաղաքական իրադրության մեջ, հարստացնում է սոցիալիստական շինարարության փորձով, բարձրացնում է նրանց քաղաքա-

կան զգաստությունն ու բոլշևիկյան կոփվածքը։

«Համառոտ դասընթաց»-ի միջոցով մենք սովորում ենք ստեղծագործական մարքսիզմը։ Նա ցույց է տալիս, թե ինչպես պարտիան և նրա առաջնորդներ ու հիմնադիրներ Լենինը և Ստալինը մարքսիստական թեորիան զարգացրել են պայքարի նոր պայմաններին և նոր պատմական իրադրությանը համապատասխան։

Եղել է ժամանակ, օրինակ, երբ մարքսիզմը գտնում էր, որ սոցիալիստական ռևոլյուցիան հաղթել կարող է միայն բոլոր կապիտալիստական երկրներում կամ կապիտալիստական երկրների մեծ մասում միաժամանակ։ Ուսումնասիրելով իմպերիալիզմի զարգացման օրենքները, սահմանելով այդ զարգացման անհամաչափությունը տարբեր երկրներում, Լենինը եկավ այն հետևության, որ սոցիալիստական ռևոլյուցիան կարող է հաղթել մեկ առանձին վերցրած երկրում։ Հայտնի է, որ Լենինի այդ ուսմունքը 1917 թվականին փայլուն կերպով հաստատվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի հաղթանակով։

Մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի լե-



նինյան ուսմունքը ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության փորձի հիման վրա էլ ավելի զարգացրեց ընկեր Ստալինը։ Նա մշակեց մեր երկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիայի և գյուղատնտեսության կոլեկտիվացման հանճարեղ ծրագիրը, հիմնավորեց մեր երկրում, կապիտալիստական շրջապատման պայմաններում, կոմունիստական հասարակակարգ կառուցելու հնարավորությունը։

Եվ այժմ սովետական մարդիկ, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, մեծագույն եռանդով պայքարում են կոմունիզմի հաղթանակի համար։

«Համառոտ դասընթաց»-ը ցույց է տալիս մարքսիզմ-լենինիզմի թեորիայի միասնությունը, նրա կապը կոմունիստական պարտիայի պրակտիկ ռևոլյուցիոն գործունեության հետ։ Թեորիան լուսավորում է պարտիայի ուղին, իսկ պրակտիկայի միջոցով ստուգվում է թեորիան։

Բոլշևիկների պարտիան, որպես համաշխարհային կոմունիստական շարժման առաջավոր ջոկատ, ուժեղ է իր պրոլետարական ինտերնացիոնալիզմով։

Սովետական կարգերը տոգորված են ա-

Այդ մասին են վկայում պարտիայի որոշումները գրականության և արվեստի վերաբերյալ: Գյուղատնտեսական գիտությունների Վ. Ի. Լենինի անվան Համամիութենական Ակադեմիայի օգոստոսին տեղի ունեցած սեսիան, ակադեմիկոս Տ. Դ. Լիսենկոյի զեկուցումը, որին հավանություն է տվել Համ. Կ(բ)Պ Կենտկոմը, ցույց են տալիս թե ինչպես պարտիայի ղեկավարությամբ մեր գիտությունը մաքրվում է իդեալիստական աղտեղությունից, թե ինչպես նա սկսում է ծառայել սովետական հասարակությանը:

Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների ուսումնասիրությունը պարտիական և ոչ պարտիական բոլշևիկների կարևորագույն խընդիրն է: «Տիրապետել մարքսիստական-լենինյան թեորիային,— սովորեցնում է ընկեր Ստալինը «Համառոտ դասընթաց»-ում,— նշանակում է յուրացնել այդ թեորիայի էությունը և սովորել օգտվել այդ թեորիայից պրոլետարիատի դասակարգային պայքարի տարբեր պայմաններում ռևոլյուցիոն շարժման պրակտիկ հարցերը լուծելիս»:

Ստալինյան «Համառոտ դասընթաց»-ը, մարքսիզմի կլասիկների մյուս երկերի հետ



միասին, հանդիսանում է մեր ժողովրդի իդեոլոգիական դաստիարակության զորեղ միջոց: Ահա՛ թե ինչու միլիոնավոր սովետական մարդկանց ձեռքում այդ գիրքը դարձել է հզոր մի զենք: Նա պայքարի և նորանոր սխրագործությունների է ոգեշնչում սովետական մարդկանց հանուն կոմունիզմի հաղթանակի:

Ս.. ԳԻՆԳԻՆ

ղաւ ժողովուրդների բարեկամության ստալինյան իդեայով։ Այդ բարեկամության, և կոմունիզմի կառուցման համար մղվող համատեղ պայքարի հիման վրա աճում ու ամրապնդվում է սովետական հայրենասիրությունը։ «Սովետական հայրենասիրության մեջ,— ասում է ընկեր Ստալինը,— ներդաշնակորեն զուգակցվում են ժողովուրդների ազգային տրադիցիաները և Սովետական Միության բոլոր աշխատավորների ընդհանուր կենսական շահերը»։

Մեր մեծ փորձը և մեր հզորությունը բոլոր ժողովուրդների ազատագրական պայքարի հետագա հաջողությունների հիմքն են հանդիսանում։ «Համառոտ դասընթաց»-ը հսկայական միջազգային նշանակություն ունի։ Նա մյուս երկրների եղբայրական կոմպարտիաներին զինում է բոլշևիզմի պատմական փորձով, նրանց օգնում է իրենց միջավայրում ճանաչելու աջ և «ձախ» օպորտունիստներին, որոնք բուրժուազիայի կամքն են կատարում։ «Համառոտ դասընթաց»-ը եղբայրական կոմպարտիաների մեջ դաստիարակում է պրոլետարական ինտերնացիոնալիզմ, սեր և նվիրվածություն դեպի Սովետական Միությունը, ՀամԿ(բ)Պ-ն։ Նա նրանց



օգնում է ազգային հարցը լուծել ժողովուրդների բարեկամության ոգով, բուրժուական նացիոնալիզմի դեմ պայքարի ոգով։

Մեր կոմունիստական շինարարության մեջ այժմ հսկայական նշանակություն է ստանում սովետական մարդկանց սոցիալիստական գիտակցությունը։ Որքան բարձր լինի աշխատավորների, պարտիական և սովետական կադրերի գաղափարական-քաղաքական կոփվածքը, այնքան ավելի զգալի կլինեն մեր հաջողությունները տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում, այնքան ավելի կարագանա մեր առաջընթաց շարժումը։

Կապիտալիզմի մնացուկները սովետական մարդկանց գիտակցության մեջ դեռևս լի վիճակի են խանգարելու մեր զարգացմանը։ Բուրժուական իդեոլոգիան, թափանցելով մեր երկիրը, ձգտում է աշխուժացնել նացիոնալիզմը, անոտիապաշտությունը, կրոնական նախապաշարմունքները, բուրժուական կեղծ կուլտուրայի երկրպագումը։

Պարտիան անհաշտ պայքար է մղում բուրժուական իդեոլոգիայի արտահայտությունների դեմ կուլտուրայի, գիտության և առօրյա կյանքի բոլոր բնագավառներում։

# ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ ՊԱՐՏԻԱՅԻ ԱՆԶՆՎԵՐ ՄԱՐՏԻԿԸ

Երեսուն տարի առաջ, 1918 թվականի սեպտեմբերին, Անդրկասպյան երկրի ավազուտներում անգլիական իմպերիալիստների և նրանց ստորաքարշ ծառաների՝ էսերների, դաշնակների և մենշևիկների արյունոտ ձեռքով տմարդիորեն գնդակահարվեցին Բաքվի հերոսական կոմունայի 26 բոցաշունչ կոմիսարները՝ Ստեփան Շահումյանը, Ալյոշա Ջափարիձեն, Մեշադի Ազիզբեկովը, Իվան Ֆիոլետովը և մյուսները։

Լենինի-Ստալինի գործի անվեհեր մարտիկներ Ս. Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովը, Ի. Ֆիոլետովը և Բաքվի կոմունայի հերոս մյուս կոմիսարները Անդրկովկասի ժողովուրդների անխորտակելի բարեկամության մարմնացումն են։ Նրանք մինչև իրենց կյանքի վերջին կաթիլ արյունը



հավատարիմ ծառայեցին կոմունիզմի մեծ գործին։

Բաքվի 26 կոմիսարների հրաշալի կյանքը և բեղմնավոր գործունեությունը սերտորեն կապված է Անդրկովկասի ռևոլյուցիոն շարժումների պատմության հետ։

Մ. Ազիզբեկովը իր ռևոլյուցիոն մկրտությունը և կրթությունը ստանալով Պետերբուրգում, ռևոլյուցիոն աշխատանք ծավալեց Ադրբեջանում և դարձավ պրոֆեսիոնալ-ռևոլյուցիոներ, կոմունիզմի հաղթանակի համար մարտնչող մարտիկ։ Ա. Ջափարիձեն հայտնի դարձավ, որպես տաղանդավոր կազմակերպիչ, նա երկար տարիներ ռևոլյուցիոն աշխատանք ծավալեց Բաքվի պրոլետարիատի մեջ։ Ի. Ֆիոլետովը Բաքվի բոլշևիկների ականավոր ղեկավարներից մեկն էր, որը եռանդուն կերպով կազմակերպում էր Բաքվի պրոլետարիատին։

Ստեփան Շահումյանը Լենինի և Ստալինի ղեկավարությամբ աճեց ու կոփվեց և դարձավ բոլշևիկյան պարտիայի ականավոր գործիչներից մեկը։

Այս տարվա Հոկտեմբեր ամսին լրանում է Ստ. Շահումյանի ծննդյան 70-ամյակը։

Ստ. Շահումյանն իր նախնական կրթու-

թյունը ստացել է Թբիլիսիի ռեալական ուսումնարանում: Ռեալական ուսումնարանի աշակերտության ու ուսուցչության շրջանում Ստ. Շահումյանը աչքի ընկավ իր բացառիկ աշխատասիրությամբ և ընդունակություններով:

Հասարակական-քաղաքական հարցերը դարձան Շահումյանի ուշադրության ու հետաքրքրության առանցքը: Նա ծանոթացավ փիլիսոփայության, քաղաքատնտեսության և պատմության մարքսիստական գրքույկների հետ:

Ռեալական ուսումնարանի հինգերորդ դասարանի աշակերտ Ստեփան Շահումյանը արդեն հանդես է գալիս, որպես աշակերտական ընդհատակյա խմբակների կազմակերպիչ ու ղեկավար:

Այստեղ, ռեալական ուսումնարանում Ստ. Շահումյանը լրջորեն ուսումնասիրում է նաև եվրոպական ու ռուսական կլասիկ գրողներին: Նա հանգամանորեն ուսումնասիրում է Բելինսկու, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի և ռուսական մյուս դեմոկրատ-ռևոլյուցիոներների աշխատությունները:

1898 թվին Շահումյանը ավարտում է ռեալական ուսումնարանը: Իսկ այդ ժամա-



նակաշրջանում Անդրկովկասում ծավալվում էին ռևոլյուցիոն շարժումները և սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների գործունեությունը: 1898—1900 թ. թ. ժամանակաշրջանում առաջ եկավ ու ձևավորվեց Թբիլիսիի կազմակերպության ղեկավար կենտրոնական սոցիալ-դեմոկրատական խումբը, որը պրոպագանդիստական ու կազմակերպական աշխատանք կատարեց անլեգալ սոցիալ-դեմոկրատական պարտիական կազմակերպություն ստեղծելու ուղղությամբ: Ընկեր Ստալինը գլխավորում է այդ խումբը:

1898 թվականին երիտասարդ Շահումյանը ընդունվում է Ռիգայի պոլիտեխնիկական ինստիտուտը: Այդ տարիներին հասարակական կյանքի զարգացման բազմաթիվ հարցերի հետ ուշադրության էին արժանանում նաև ուսանողական շարժումները: Ստ. Շահումյանը Ռիգայում ուսանողական ռևոլյուցիոն շարժման ղեկավարներից մեկն է դառնում և 1902 թվին մասնակցում է Ռուսաստանի ուսանողական համագումարին: Ուսանողական համագումարում արտասանած ճառում, նա ասում է, որ անիրականանալի են բոլոր տեսակի վառ ձգտումները «... մինչև որ չխորտակվի քաղաքական դր-

խավոր խոչնդոտը, այն է՝ ցարիզմը»։

Բանվորների և ուսանողների մեջ ռևոլյուցիոն աշխատանք կազմակերպելու համար, 1902 թվին Շահումյանը հեռացվում է Ռիգայի պոլիտեխնիկական ինստիտուտից և աքսորվում Կովկաս։

1902 թվի մարտի 9-ին ընկեր Ստալինը կազմակերպեց Բաթումի բանվորների քաղաքական ցույցը։ Ընկեր Ստալինի գլխավորությամբ աճեց Անդրկովկասի լենինյան-իսկրայական կազմակերպությունը։

Ընկեր Ստալինը կազմակերպական և տեսական հսկայական աշխատանք ծավալեց Անդրկովկասի պրոլետարիատի շրջանում, մերկացրեց «էկոնոմիստներին» և մարքսիզմի մյուս թշնամիներին։ Պայքարի այս բովում էլ ավելի կոփվեց և ձևավորվեց Ստեփան Շահումյանը։

1903 թվին, առաջին անգամ ժնևում Ստ. Շահումյանը հանդիպում է պրոլետարական ռևոլյուցիայի հանճարեղ առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի հետ։ Այդ հանդիպումը բացառիկ նշանակություն ունեցավ երիտասարդ Ստեփանի հետագա ռևոլյուցիոն գործունեության համար։ 1903 թվականին Ստ. Շահումյանը կրկին վերադառնում է Անդրկովկաս։ Միխա



Ցխակայայի օգնությամբ նա կապվում է ՌՍԴԲՊ Կովկասյան միութենական կոմիտեի անդամների հետ և ակտիվ մասնակցություն ունենում ռևոլյուցիոն շարժումներին։

Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ և ղեկավարությամբ, Ստ. Շահումյանի ակտիվ մասնակցությամբ, հայերեն լեզվով թարգմանվեց և հրատարակվեց մարքսիստական բազմաթիվ գրականություն, այդ թվում նաև «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», որը բացառիկ նշանակություն ունեցավ բանվորների և գյուղացիների կոմունիստական դաստիարակության համար։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի նախօրյակին և ապա հաջորդ տարիներին ընկեր Ստալինի ղեկավարած Կովկասյան միութենական կոմիտեի կոչով քաղաքական ընդհանուր գործադուլներ տեղի ունեցան Բաքվում, Թբիլիսիում, Բաթումում, Ճիաթուրիում, Գյանջայում, Ալավերդում, Ալեքսանդրապոլում և Կովկասի արդյունաբերական այլ քաղաքներում։

Վ. Ի. Լենինը բացառիկ նշանակություն տվեց Կովկասում տեղի ունեցող ռևոլյուցիոն շարժումներին և 1903 թվի հոկտեմբերի 20-ի իր նամակում հավանություն տվեց Անդրկով-

կասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների կիրառած իսկական ռևոլյուցիոն գծին։ Այդ կապակցությամբ Վ. Ի. Լենինը Կովկասյան միութենական կոմիտեին գրում էր՝

«Թող Կովկասի ընկերները հաստատապես գնան այն ուղիով, որ բռնել են իրենք»։ «...Կովկասյան ընկերներին ողջույն, աշխատանքի հաջողությունների ջերմ ցանկություններ ենք հղում»։

Կովկասյան միութենական կոմիտեն ընկեր Ստալինի ղեկավարությամբ ջերմ արձագանքեց Վ. Ի. Լենինի կոչին և ՌՍԴԲՊ Կովկասյան բոլոր կազմակերպություններին սերտ կերպով համախմբեց Լենինի շուրջը։ Լենինյան այդ գծի իրականացման համար պայքար են ծավալում մեծ Ստալինի ամենամոտիկ զինակիցներն ու սաները — Ստեփան Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Սպանդարյանը, Օրջոնիկիձեն և ուրիշները։ Ռուսական առաջին ռևոլյուցիայի շրջանում (1905—1907 թ. թ.) ընկեր Ստալինի գլխավորությամբ գործող ՌՍԴԲՊ Կովկասյան միութենական կոմիտեի կազմում էին, ընկեր Ստալինից բացի նաև Միխա Ցխակայան, Ա. Ծուլուկիձեն, Ստ. Շահումյանը, որոնք պայքար էին



կազմակերպում ընդդեմ մենշևիկների, շենդրիկովցիների, դաշնակների և բանվոր դասակարգի մյուս թշնամիների։

1907—1912 թվականների ժամանակաշրջանում ընկեր Ստալինի գլխավորությամբ ամրացավ ու կոփվեց Բաքվի բոլշևիկյան կազմակերպությունը։ Բաքվի բոլշևիկյան կազմակերպության կոմիտեի կազմի մեջ տարբեր ժամանակ մտնում էին ընկերներ Ստալինը, Ա. Ջափարիձեն, Ս. Շահումյանը, Ս. Օրջոնիկիձեն, Ս. Սպանդարյանը, Վ. Ֆիոլետովը և ուրիշները, որոնք առաջավոր բանվորներից ակտիվ ստեղծեցին և անհաշտ պայքար ծավալեցին Բաքվի մենշևիկյան կազմակերպության դեմ։ Այդ պայքարի ընթացքում աճեց ու ամրացավ Բաքվի բոլշևիկյան կազմակերպությունը, ջախջախվեցին մենշևիկները և բանվորների ճնշող մեծամասնությունը անցավ բոլշևիկների կողմը, «Բաքուն դարձավ Անդրկովկասյան բոլշևիկյան կազմակերպությունների հենարանը, Լենինյան պարտիայի անխորտակելի ամրոցը» (Լ. Պ. Բերիա)։

Բաքվի բոլշևիկյան կոմիտեն ընկեր Ստալինի գլխավորությամբ մի շարք խոշոր գործադուլներ կազմակերպեց. այդ գործում

հսկայական դեր կատարեց Շահումյանը։ Ընկեր Ստալինի գլխավորությամբ և նրա անմիջական ցուցումով Ստ. Շահումյանը և Ս. Սպանդարյանը կազմակերպեցին Հայաստանի բանվորների և գյուղացիների պայքարը ընդդեմ ցարիզմի, ընդդեմ դաշնակների և ժողովրդի մյուս թշնամիների։ Նրանք կազմակերպեցին ու գլխավորեցին Երևանի, Ալավերդու, Ջալալօղլու, Ալեքսանդրապոլի և մի շարք այլ վայրերի բանվորների գործադուլները։

Երևանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունը Ստ. Շահումյանին ընտրեց ՌՍԴԲՊ Ստոկհոլմի համագումարի դելեգատ։

Ստ. Շահումյանը ակտիվ մասնակցություն ունեցավ Ստոկհոլմի համագումարի աշխատանքներին։ Լենինի և Ստալինի գլխավորությամբ Ստ. Շահումյանը համագումարում պաշտպանեց բոլշևիկյան պարտիայի գիծը։

Շահումյանը վճռական ձայնի իրավունքով մասնակցում է ՌՍԴԲՊ Լոնդոնի համագումարին (1907 թ.), որտեղ հանդես է գալիս ուշագրավ ճառով և մերկացնում է Կովկասի մենշևիկներին։ Վերադառնալով համագումարից,



Ստ. Շահումյանը ընկեր Ստալինի ցուցումներով ծավալում է քաղաքական խոշոր աշխատանք Բաքվի նավթարդյունաբերության բանվորների շրջանում։ Ցարական կառավարությունը հետապնդում է Ստ. Շահումյանին և 1909 թվականին ձերբակալում նրան։

Բանտից ազատվելուց հետո Ստ. Շահումյանը ակտիվ կերպով մասնակցում է Պրագայի պարտիական կոնֆերանսի հրավիրման առթիվ ծավալած նախապատրաստական աշխատանքներին, բայց շուտով կրկին բանտարկվում է և աքսորվում։ Աքսորավայրում նա կապվում է բոլշևիկյան կազմակերպությունների հետ և շարունակում իր ռևոլյուցիոն աշխատանքը։

1914 թվականին Ստ. Շահումյանը վերադառնում է Կովկաս՝ Բաքու, որտեղ ամենաեռանդուն կերպով ձեռնամուխ է լինում քաղաքական-կազմակերպական աշխատանքներին։

1915 թվականին Լենինի և Ստալինի ցուցումներով, Ստ. Շահումյանի ղեկավարությամբ հրավիրվում է Անդրկովկասյան բոլշևիկյան կազմակերպությունների կոնֆերանս, որը նշում է մասսաներին ոտքի հանելու, զինված պայքար մղելու անհրա-

ժեշտությունը՝ ցարիզմի ու բուրժուազիայի դեմ։ Ցարական կառավարությունը նորից է ձերբակալում Ստ. Շահումյանին և աքսորում Սարատով։

1917 թվականի փետրվարին, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից անմիջապես հետո Ստ. Շահումյանը վերադառնում է Բաքու։

Չնայելով մենշևիկների, էսէռների, մուսավաթիստների և դաշնակների ստոր, դավաճանական քաղաքականության և նրանց կատաղի դիմադրության, Բաքվի պրոլետարիատը հեռակա կարգով Սովետի նախագահ է ընտրում ընկեր Ստալինի հավատարիմ զինակից Ստեփան Շահումյանին։ Այդ մասին նա իմանում է դեռևս ճանապարհին, Բաքու վերադառնալու ժամանակ։

Փետրվարյան ռևոլյուցիայի առաջին օրերից, աքսորից վերադարձած Ստ. Շահումյանը, իր մարտական ընկերների՝ Ազիզբեկովի, Ջափարիձեի, Ֆիոլետովի, Միկոյանի հետ միասին, Լենինի և Ստալինի ցուցումներով ամբողջ թափով պայքար է ծավալում, որպեսզի բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերա-



ճի և հաստատվի պրոլետարական դիկտատուրա։

1917 թվականի հուլիսի 26-ին Պետրոգրադում Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ բացվեց ՌՍԴԲՊ 6-րդ համագումարը, որտեղ Ստեփան Շահումյանը ընտրվեց պարտիայի Կենտկոմի անդամ։

Ընկեր Ստալինի ցուցումներով Ստեփան Շահումյանը 1917 թվականի հոկտեմբերին Թբիլիսիում անց է կացնում Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների առաջին համագումարը, որտեղ որոշվեց Անդրկովկասյան բոլշևիկների տակտիկան սոցիալիստական ռևոլյուցիայի համար մղվող պայքարում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիան Լենինի և Ստալինի գլխավորությամբ հաղթանակեց և նոր դարաշրջան բացեց մարդկության պատմության մեջ։ 1917 թվականի նոյեմբերի 2-ին Բաքվի Սովետում Ստեփան Շահումյանը հանդես եկավ ընդարձակ զեկուցումով, որի առթիվ ընդունվեց իշխանությունը գործնականապես սովետներին անցնելու ծրագիրը։

1917 թվի դեկտեմբերի 16-ին Ժողկոմսովետը Լենինի նախաձեռնությամբ քըն-

նարկեց Կովկասի դրությունը, որի մասին զեկուցեց ընկեր Ստալինը։

Ընկեր Ստալինի առաջարկությամբ Ժողկոմսովետը որոշեց Ստեփան Շահումյանին նշանակել Կովկասի գործերի արտակարգ կոմիսար։

1917 թվի դեկտեմբերի 18-ին ստորագրվեց մանդատը, որում ասված էր՝

«Սույն մանդատը ներկայացնող, բոլշևիկների պարտիայի Կենտրոնական Կոմիտեի անդամ, Բանվորների և Զինվորների դեպուտատների Բաքվի ռայոնի Սովետի նախագահ Ստ. Շահումյանը նշանակված է Կովկասի գործերի ժամանակավոր արտակարգ կոմիսար, մինչև Կովկասում երկրային սովետական իշխանություն կազմվելը։

Ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահ՝ Վ. ՈՒԼՅԱՆՈՎ (ԼԵՆԻՆ)

Ազգությունների գործերի Ժողովրդական Կոմիսար՝ Ի. ՋՈՒԳԱՇՎԻԼԻ (ՍՏԱԼԻՆ)»։

Վ. Ի. Լենինը 1918 թ. փետրվարի 14-ին գրում էր. «Թանգակին ընկեր Շահումյան։ Շատ շնորհակալ եմ նամակի համար։ Մենք հիացած ենք ձեր հաստատակամ և վճռա-



կան քաղաքականությամբ։ Կարողացեք միացնել դրան ամենազգույշ դիվանագիտություն, որն անպայման թելադրվում է ներկայի դժվարագույն դրությամբ, և մենք կըհաղթենք»։ Իսկ 1918 թվականի մարտի 19-ին ընկեր Ստալինը «Ստեփանին, Ալյոշային և մյուս բարեկամներին» իր նամակում գրում էր, որ անհրաժեշտ է Բաքուն ամրացնել ռազմական և ֆինանսական տեսակետից։ Այս ուղղությամբ Ստ. Շահումյանը հսկայական աշխատանք ծավալեց։

Շահումյանը ամենասերտ կապերի մեջ էր Լենինի և Ստալինի հետ, նա Կովկասի դրության մասին մանրամասն զեկուցում էր ռևոլյուցիայի առաջնորդներին։

Կատաղի դասակարգային մարտեր էին տեղի ունենում Կովկասում։ Գնալով ծանրանում էր Անդրկովկասի դրությունը։

Զինվելով Լենինի և Ստալինի մարտական ցուցումներով Շահումյանը կազմակերպեց Բաքվի ռևոլյուցիոն պաշտպանության կոմիտե, որը սովետական կարգերի հաստատման համար բացառիկ աշխատանք կատարեց։

Սովետական Բաքվի վրա հարձակվեցին իմպերիալիստական ուժերը։

Իմպերիալիստ-ավազակներին հաջողվեց ձերբակալել Շահումյանին և նրա անբաժան մարտական ընկերներին՝ Ջափարիձեին, Ցիոլետովին և մյուսներին:

Լենինը խիստ անհանգստացավ Շահումյանի վիճակով: Լենինը գրում էր. «Ո՞րտեղ է Շահումյանը: Հարցրեք Ստալինին և գործեցեք բոլոր հանգամանքների նկատառումով: Դուք գիտեք, որ ես լիովին վստահում եմ Շահումյանին»:

Անգլիական իմպերիալիստների և նրանց ստոր գործակալների արյունոտ ձեռքով ռևոլյուցիայի անխոնջ մարտիկ Ստեփան Շահումյանը իր հարազատ ընկերների, բոլշևիկյան պարտիայի հերոսական, բոցաշունչ մարտիկների՝ Ջափարիձեի, Ազիզբեկովի, Ցիոլետովի և մյուսների հետ հերոսաբար ընկավ, կոչելով՝ «Մենք մեռնում ենք կոմունիզմի համար: Կեցցե Կոմունիզմը»...:

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

---

ԶՐՈՒՅՑ ՑԵԽՈՒՄ

## ՊԱՅՔԱՐԸ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ԱԳԻՏԱՏՈՐԻ ՊԱՏՎԱՎՈՐ ԽՆԴԻՐՆ Է

Վ. Ի. Լենինը պահանջում էր «տնտեսության մեծագույն ու մեծագույն խնայողության գնով մեր պետության մեջ հասնել այնպիսի դրության, որպեսզի ամեն մի փոքրագույն խնայողություն պահենք մեր խոշոր մեքենային ինդուստրիայի զարգացման համար...»:

Սովետական մարդիկ մշտապես հոգում են սոցիալիստական հանրային սեփականությունը պահպանելու, պետական միջոցները խնայողությամբ ծախսելու մասին, ձգտում են խնայել ժողովրդական բարիքը: Ընկեր Ժդանովը մատնանշել է. «Մեր որոշ տնտեսավարներ մինչև այժմ էլ չեն հասկանում, որ խնայողության ռեժիմը, որի մասին բազմիցս խոսել են Լենինը և Ստալինը, ոչ թե կարճատև կամպանիա է, այլ սոցիալիզմին հատուկ տնտեսավարման մեթոդ է: Սովետական մարդիկ պարտավոր են մշտապես

հիշել այդ ցուցումները և անշեղորեն ղեկավարվել դրանցով իրենց աշխատանքում» («Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլուցիայի 29-րդ տարեդարձը», էջ 10)։

Խնայողության համար մղվող պայքարը առանձնակի ուժով ծավալվեց Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, երբ արտադրության բոլոր ռեզերվները ի սպաս էին դրվել ռազմաճակատի կարիքներին, երբ յուրաքանչյուր ազնիվ սովետական մարդ ձգտում էր խնայածը ծառայեցնել ռազմաճակատի կարիքների համար, թշնամուն ջախջախելու համար։

Հետպատերազմյան տարիներին, ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա բուռն զարգացման համար մղվող եռանդուն պայքարի պայմաններում խնայողությունը և արտադրության բոլոր ռեսուրսների մոբիլիզացիան ծավալվում է է՛լ ավելի մեծ չափերով։ Ամբողջ երկրում լայն ծավալ է ստացել համաժողովրդական սոցիալիստական մրցությունը հնգամյա պլանը չորս տարում կատարելու համար։ Հետպատերազմյան հնգամյակում արտադրության ծախքերի իջեցման հաշվին կատարվող խնայողությունը պետք է կազմի 160 միլիարդ ռուբլի։ Այս հսկայական գու-



մարը կարող է տնտեսվել միմիայն բոլոր բանվորների, ծառայողների ու կոլխոզնիկների մշտական ջանքերի շնորհիվ, սոցիալիստական տնտեսության մեջ խնայողության ռեժիմի հսկայական կարևորությունը գիտակցելու շնորհիվ։

Խնայողություն պետք է կատարվի ամեն բանում՝ ժամանակի մեջ, հումքի օգտագործման ու պահպանման, բանվորական օրը լրիվ օգտագործելու մեջ, էներգիայի տնտեսման, կորուստներն ու արտադրանքի խոտանը լիկվիդացնելու, յուրաքանչյուր սովետական ռուբլու խնայողաբար ծախսման միջոցով։ Տնտեսման աղբյուր է նաև աշխատանքի արտադրողականության բարձրացումը։

Մեր ժողովրդական տնտեսության մասշտաբները այնքան հսկայական են, որ եթե հաշվենք մեկ աշխատանքային րոպեի արժեքը, ապա վիթխարի թվեր կստացվեն։ Հնգամյա պլանի համաձայն, 1950 թվականին արդյունաբերության տարեկան արտադրանքի արժեքը կկազմի 205 միլիարդ ռուբլի, այսինքն՝ օրական ավելի քան 560 միլիոն ռուբլի, իսկ աշխատանքի յուրաքանչյուր րոպեն (երկհերթ աշխատանքի դեպքում) կարժենա ավելի քան 560 հազար ռուբլի։

1950 թվականին յուրաքանչյուր րոպեում սովետական ածխահատները կհանեն 952 տոննա ածուխ, մետալուրգները կձուլեն 96 տոննա պողպատ, 78 տոննա չուգուն, մանածագործները կարտադրեն ավելի քան 19 հազար մետր գործվածք, կոշկագործները բնակչությանը կտան 1200 զույգ կաշվե ու ռետինե ոտնաման, և այլն։

Այս տարվա միայն առաջին եռամսյակի ընթացքում Մոսկվայի և նրա մարզի ձեռնարկություններում էլեկտրական էներգիայի խնայողությունը կազմեց 44 միլիոն կիլովատ ժամ,— մի քանակություն, որի ուժով կարելի է ձուլել 30 հազար տոննա պողպատ, արդյունահանել 700 հազար տոննա ածուխ, արտադրել 60 միլիոն մետր գործվածք։

Լենինականի Տեքստիլ կոմբինատի կոլեկտիվի միայն մի բանվորական ժամի խնայողությունը մեր երկրին տալիս է 3000 մետրից ավելի մանվածք։ Իսկ Կարբիդի գործարանի մի ժամվա խնայողությունը տալիս է 4000 ռուբլուց ավելի արտադրանք։

Խնայողության խստագույն ռեժիմ պահպանել հնարավոր է միայն այնտեղ, որտեղ ամեն ինչ այդ նպատակին է ենթարկված, որտեղ այդ մասին հոգում են ոչ միայն ղեկավարները, այլև ձեռնարկության ամբողջ



կոլեկտիվը։ Որտեղ յուրաքանչյուր բանվոր իր առջև խնդիր է դնում՝ տալ լավորակ արտադրանք, չծախսելով դրա վրա ոչ մի ավելորդ րոպե, հումքի ոչ մի ավելորդ դրամ, այնտեղ իսկապես խնայողություն կկատարվի։ Դեպի աշխատանքը այդպիսի սոցիալիստական վերաբերմունք է միշտ դաստիարակել Լենինի-Ստալինի մեր պարտիան։

Այս պատվավոր գործի մեջ կարևոր դեր պետք է խաղա ձեռնարկության, գործարանի, ֆաբրիկայի ագիտատորը։ Յուրաքանչյուր ագիտատոր պետք է ցույց տա խնայողության, դեպի արտադրությունը տնտեսավար վերաբերմունքի օրինակ, պետք է տեղյակ լինի խնայողության ռեժիմի կիրառման հետ կապված բոլոր մանրամասնություններին։ Եթե գործարանի ցեխում ագիտատորը նկատում է նյութերի անկոնտրոլ ծախսում, նա պետք է անմիջապես այդ հարցը հանձնի հասարակայնության դատին, պետք է կոլեկտիվը մոբիլիզացնի շռայլության դեմ պայքարելու համար։ Եթե ագիտատորը նկատում է, որ ցեխում խոտանաբարներ են երևացել, նա պետք է համոզիչ, կենդանի խոսքերով ու օրինակներով ամբողջ կոլեկտիվի մեջ անհաշտ վերաբերմունք

տեսչի դեպի խոտանարարները։ Պայքարը խնայողության ռեժիմի համար, դա անհաշտ պայքար է խոտանի դեմ, արտադրանքի բարձր որակի համար, դա վերջապես, մաքրության և կարգ ու կանոնի ամենօրյա պահպանումն է արտադրության մեջ։

Ագիտատորը պետք է բացատրի, որ մեր ժողովրդական տնտեսությունը զարգանում է ըստ պլանի, տարեց-տարի կատարելագործվում է նրա տեխնիկական բազան և, հետևաբար, այն պետք է վարել ավելի ու ավելի տնտեսավար ձևով։

Ագիտատորը պետք է անպայման համոզիչ օրինակներ բերի ցեխի կյանքից, նրա առանձին տեղամասերի ու առանձին բանվորների պրակտիկայից։ Այս գործում էական օգնություն կարող են և պետք է ցույց տան ստախանովականները, վարպետները, ինժեներա - տեխնիկական աշխատողները և պլանավիկները։ Այսպես օրինակ, Երևանի դեպոյի անվանի մեքենավար, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ ընկ. Ս. Հարությունյանը, գիտակցելով խնայողության կարևորագույն նշանակությունը, 1948 թվականի առաջին կիսամյակի ընթացքում տնտեսեց 75.525 կիլոգրամ մազութ։



Վառելանյութի տնտեսման լավ ցուցանիշներ ունի նաև մեքենավար ընկ. Ցոլակ Գևորգյանը, որը տնտեսել է 55.585 կիլոգրամ մազութ։

Խնայողության ու տնտեսման գծով լավ աշխատանքի օրինակ է տալիս Երևանի Ձերժինսկու անվան գործարանի նորոգման ցեխի ագիտատոր ընկ. Ղազար Մանուկյանը։ Նրա քրտնաջան ու սիստեմատիկ աշխատանքի շնորհիվ նորոգման ցեխում վերջ է դրվել պարապուրդներին ու խոտանին։ Նա համոզիչ օրինակներով ու փաստերով բանվորներին պարզաբանում է, թե ինչպիսի մեծ ժողովրդա-տնտեսական նշանակություն ունի ժամանակի յուրաքանչյուր րոպեի, հումքի յուրաքանչյուր գրամի, էլեկտրաէներգիայի յուրաքանչյուր կիլովատի խնայողությունը։ Բոլշևիկյան կենդանի խոսքով ագիտատոր ընկ. Մանուկյանը իր ցեխի բանվորների գիտակցությանն է հասցնում խնայողության ռեժիմի համապետական նշանակությունը, նրանց մոբիլիզացնում է խնայողության նոր ռեզերվներ գտնելու համար, բանվորների մեջ դաստիարակում է ամեն ինչի նկատ-

մամբ խնայողաբար վերաբերվելու զգացմունք։

Ընկ. Մանուկյանի առավելությունը նաև այն է, որ նա իր անձնական օրինակով ևս ցույց է տալիս, թե ինչպես պետք է տնտեսել նյութերը և լրիվ օգտագործել բանվորական ժամանակը։

Կիրովի անվան գործարանի 1—11 ցեխի ագիտատոր ընկ. Թելումյանը և 1—8 ցեխի ագիտատոր ընկ. Վարդուշ Վարդանյանը իրենց զրույցների ընթացքում ցեխերի ստախանովականների օրինակներով մյուս բանվորներին ցույց են տալիս, թե խնայողության ռեժիմը ինչ է տվել և տալիս է սովետական ժողովրդին, որ խնայողությունների ու տնտեսման հաշվին կառուցվում են նոր գործարաններ, ֆաբրիկաներ, բնակելի տներ, մանկապարտեզներ, հիվանդանոցներ, արտադրվում են տրակտորներ և այլն։ Արտադրության առաջավորների օրինակով նրանք ցույց են տալիս չօգտագործված ռեզերվները, այն, թե ինչի հաշվին պետք է խնայողություն կատարել։

Բոլորին հայտնի է խնայողության ռեժիմի



հսկայական ժողովրդա-տնտեսական նշանակությունը։ Ընկեր Ստալինն ասել է, որ խնայողության համար պահանջվում է «Ոչնչացնել անտնտեսավարությունը, մոբիլիզացնել արդյունաբերության ներքին ռեսուրսները, արմատավորել ու ամրապնդել տնտհաշվարկը մեր բոլոր ձեռնարկություններում, սիստեմատիկաբար իջեցնել ինքնարժեքը, ուժեղացնել ներարդյունաբերական կուտակումները արդյունաբերության առանց բացառության բոլոր ճյուղերում» («Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 425)։

Խնայողության խստագույն ռեժիմի կիրառման հարցում մեր մեծ առաջնորդի ցուցումները անշեղորեն կատարելու համար ագիտատորները մեծ և պատվավոր դեր պետք է խաղան։

Ղ. ԴԱԼԼԱՔՅԱՆ

## ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԱՆԿՈՐՈՒՍՏ ՀԱՎԱՔԵԼ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԸ

*Առաջնորդին ուղղված նամակում, մեծ պարտավորություն վերցրին նաև տեխնիկական կուլտուրաների մշակությամբ զբաղվող մեր Ռեսպուբլիկայի կոլխոզները, խոստանալով բամբակենու, շաքարի ճակնդեղի և ծխախոտի ցանքերի ընդարձակման հնգամյա պլանը կատարել երեք տարում — 1948 թվին և զգալիորեն բարձրացնել նրանց բերքատվությունը։ Շատ կոլխոզներ, բրիգադաներ, օղակներ և առանձին կոլխոզնիկներ ու կոլխոզնիկուհիներ պարտավորվել են աճեցնել բամբակի, շաքարի ճակնդեղի և ծխախոտի բարձր բերք կոլխոզի և բրիգադայի ամբողջ ցանքատարածությունների վրա, իսկ հարյուրավոր օղակներ և առանձին առաջավորներ խոստացել են ստանալ բամբակենու յուրաքանչյուր հեկտարից 50—88 ցենտներ, ճակնդեղից 500—*



*800 ցենտներ և ծխախոտից 20—30 ցենտներ բերք։*

*Ռեսպուբլիկայի կոլխոզային աշխատավորությունը և գյուղատնտեսության ֆրոնտի մյուս աշխատողները 1948 թվին զգալի աշխատանք կատարեցին առաջնորդին տված խոստումը պատվով կատարելու, հարազատ պետությանը մեծ քանակությամբ և բարձրորակ տեխնիկական կուլտուրաների հումք հանձնելու համար։*

*Տեխնիկական կուլտուրաների նախացանքային մշակության, ցանքի և տնկման, քաղհան-փխրեցման, միջշարքային մշակության, սնուցման, ոռոգման, վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարի աշխատանքները ժամանակին կազմակերպելու, և որ կարևորն է որակական բարձր ցուցանիշներով կատարելու շնորհիվ, բամբակենու, շաքարի ճակնդեղի, ծխախոտի և խորդենու պլանտացիաների մեծ մասից սպասվում է բարձր բերք։*

*Ներկայումս տեխնիկական կուլտուրաների բարձր բերքի համար մղվող պայքարը թևակոխել է վերջին, եզրափակիչ և ամենապատասխանատու փուլը — բերքահավաքի շրջանը։*

*Գյուղատնտեսության բնագավառի աշ-*

խատողների պատվի գործն է մոբիլիզացնել գյուղի բոլոր ուժերն ու միջոցները՝ առատ բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու համար։

Բոլոր բամբակագործական շրջաններում օգոստոսի 28-ից սկսվել է բամբակի բերքահավաքը։ Սեպտեմբերի 25-ի տվյալներով բամբակի հումքի հանձնման պլանը կատարվել է 35,25 տոկոսով։ Փաստերը ցույց են տալիս, որ բամբակի մշակությամբ զբաղվող մի շարք կոլխոզների ղեկավարներ, հաշվի չառնելով ընթացիկ տարվա առանձնահատկությունները, որոնք առանձնապես նպաստավոր էին բամբակենու արագ հասունացման համար, վատ են նախապատրաստվել բամբակի բերքահավաքին։

Էջմիածնի շրջանի Ն. Եդեսիա գյուղի, 18-րդ պարտհամագումարի անվան, Գրամփա, Հայթաղ, Ջանգիրասարի շրջանի Ենի Հայաթ, 18-րդ պարտկոնֆերանսի անվան, Դեմուրչի, Վեդու շրջանի Խալիսա, Ենգիջա, Դաշլու և մի շարք այլ գյուղերի կոլխոզներում բամբակի բերքահավաքը սկսվեց ուշացումով, որը տեղիք տվեց բամբակի հումքի զգալի կորուստների։

Հիմնական թերություններից մեկը բամ-



բակի բերքահավաքի և հանձնման գրաֆիկի խախտումն է առանձին կոլխոզների կողմից։ Շատ կոլխոզներում բամբակի բերքահավաքը լայն չափերով չեն սկսում, սպասելով կնգուղների մասսայաբար բացվելուն։ Ինչպես ցույց է տվել անցյալ տարիների փորձը, այդ պրակտիկան չափազանց վնասակար է և տեղիք է տալիս բամբակի բերքի մեծ կորուստների։ Այս տարի մեր բամբակագործական շրջաններում մշակվում են բամբակենու 1293 և 3210 տեսակները, որոնք անցյալում մշակվող 246 տեսակից ավելի վաղահաս են։ Բացված բամբակը երկար ժամանակ բույսի վրա մնալու դեպքում թափվում է, աղտոտվում, գցում որակը և տեղիք տալիս բերքի մեծ կորուստների։ Դրա համար անհրաժեշտ է բերքահավաքը կատարել հատընտիր եղանակով, առանց սպասելու կնգուղների մասսայաբար բացվելուն։

Աշխատանքային օրվա լրիվ և արդյունավետ օգտագործումը գրաֆիկի կատարման հիմնական նախապայմանն է հանդիսանում։

Բամբակի բերքահավաքը հաջող կազմակերպելու գործում մեծ նշանակություն ունի բերքահավաքի առաջավորների փորձի մասսայականացումը։ Շատ կոլխոզնիկուհիներ

նույնիսկ բերքահավաքի առաջին օրերին
օրական հավաքում են 100 և ավելի կիլո-
գրամ բամբակ։ Այդ կոլխոզնիկուհիների
հարուստ փորձը պետք է հասցնել բոլորին
և նրանց օրինակով կազմակերպել բամբա-
կի բերքահավաքը, պայքարել աշխատանքի
արտադրողականության բարձրացման հա-
մար։

Արտաշատի շրջանի Նորաշեն գյուղի կոլ-
խոզի առաջավորների նախաձեռնությունը՝
200 և ավելի կիլոգրամ բամբակ հավաքելու
մասին, պետք է հասցնել յուրաքանչյուր
կոլխոզնիկի և սոցիալիստական մրցության
միջոցով լայն կերպով ծավալել երկհարյու-
րականների շարժումը։

Բամբակի բերքահավաքի առաջին իսկ
օրերին Հոկտեմբերյանի, Արտաշատի, Ջան-
գիբասարի և մյուս բամբակագործական
շրջանների որոշ կոլխոզներ բերքահավաքի
կանոնները խախտելու, ըստ առանձին ար-
դյունաբերական տեսակների բերքահավաքը
չկազմակերպելու պատճառով պետությանն
են հանձնել զգալի քանակությամբ 2-րդ,
նույնիսկ 3-րդ տեսակի բամբակ։ Նման երե-
վույթը միանգամայն անհանդուրժելի է։

Անհրաժեշտ է բոլոր չանաքավորներին
մանրամասն բացատրել պետությանը



բարձրորակ հումք հանձնելու խոշոր տնտե-
սական նշանակությունը, և պարզաբանել,
թե ինչպիսի մեծ օգուտներ է ստանում կոլ-
խոզը բարձրորակ բամբակ հանձնելու դեպ-
քում։

Բամբակագործական կոլխոզների ակտի-
վիստների առաջնահերթ խնդիրն է սոցիա-
լիստական մրցության լայն ծավալման,
բամբակի բերքահավաքի առաջավորների
փորձի մասսայականացման միջոցով ապա-
հովել յուրաքանչյուր կոլխոզնիկի, օղակի,
բրիգադայի և կոլխոզի կողմից բերքահա-
վաքի գրաֆիկի կատարումն ու գերակատա-
րումը։

Մեր Ռեսպուբլիկայում ներկայումս ուժեղ
թափով շարունակվում է ծխախոտի բերքա-
հավաքը։ Մինչև սեպտեմբերի 20-ը ծխախո-
տի բերքահավաքի պլանը Ռեսպուբլիկայում
կատարվել է 56,1 տոկոսով։ Բերքահավաքի
աշխատանքները համեմատաբար լավ է
կազմակերպված Ն. Բայազետի, Ղարաբաղ-
լարի, Միկոյանի և Կրասնոսելսկու շըր-
ջաններում, որոնք արդեն կատարել են բեր-
քահավաքի պլանի 70-ից 87 տոկո-
սը։ Սակայն մի շարք շրջաններ (Բասարգե-
չար, Մարտունի, Իջևան, Դիլիջան, Ալավեր-
դի և այլն), աշխատանքները վատ կազմա-

կերպելու, ծխախոտի կայուն օղակների անձնակազմն այլ աշխատանքներում օգտագործելու, չորանոցների շինարարության պլանները թերակատարելու պատճառով ետ են մնում ծխախոտի բերքահավաքի գործում: Որոշ կոլխոզներ թույլ են տալիս ծխախոտի տերևների գերհասունացում, որը և պատճառ է դառնում բերքի մեծ կորուստների:

Անցյալ տարի հատկապես չեռնային և նախալեռնային շրջաններում ծխախոտի բերքահավաքի աշխատանքները վատ կազմակերպելու պատճառով, ծխախոտի բերքի մի զգալի մասը ցրտահարվեց և ոչնչացավ: Ոչ մի դեպքում չպետք է թույլ տալ նման երևույթների կրկնումն այս տարի:

Հավաքված բերքը ժամանակին և անկորուստ չորացնելու համար անհրաժեշտ է բերքահավաքին զուգընթաց շարանակել և կարճ ժամանակամիջոցում ավարտել արևային և կրակային նոր չորանոցների շինարարությունը, ինչպես նաև հների վերանորոգումը ու նրանց առավելագույն շահագործումը:

Ծխախոտագործության առաջավորների փորձի, ինչպես նաև գիտա-հետազոտական հիմնարկների ուսումնասիրությունների հիման վրա, ընթացիկ տարում Հայկական ՍՍՌ



Գյուղատնտեսության մինիստրությունը նախատեսել է մոտ 1000 հեկտար տարածության վրա կազմակերպել ծխախոտի 2-րդ բերքի ստացման աշխատանքները Շամշադինի, Իջևանի, Նոյեմբերյանի, Ալավերդու, Ղափանի և մի շարք այլ տաք շրջաններում, որտեղ աշնանային ցրտահարությունները համեմատաբար ուշ են տեղի ունենում:

Ագրոտեխնիկական այդ նոր ձեռնարկումը լուրջ կերպով կազմակերպելու դեպքում, մեր երկիրը կստանա զգալի քանակությամբ լրացուցիչ բարձրորակ բերք:

Շաքարի ճակնդեղի բերքահավաքը առաջինը սկսեց Ախուրյանի շրջանը, իսկ մնացած շրջաններում սկսվելու է մոտ օրերս: Ներկայումս շաքարի ճակնդեղի պլանտացիաներում շարունակվում են ջրի, իսկ առանձին դաշտերում նաև փխրեցման աշխատանքները: Մշակության աշխատանքներին զուգընթաց ծավալվում են նախապատրաստական աշխատանքներ, ճակնդեղի բերքահավաքը սեղմ ժամկետում ավարտելու և մթերակայաններ փոխադրելու համար: Ճակնդեղի մշակությամբ զբաղվող յուրաքանչյուր օղակ, բրիգադա, կոլխոզ պետք է ճշտի բերքահավաքի գրաֆիկը, ստուգի գործիքների առկա քանակը և վիճակը, փոխադրական

միջոցները համարեցնի ճակնդեղի փոխադրման համար և ամրացնի աշխատանքի տեղամասերին, վերանորոգի ու կարգավորի դաշտամիջյան և գյուղամիջյան ճանապարհները, կամուրջները այն հաշվով, որ մինչև ճակնդեղի բերքահավաքի սկսելը ավարտվեն այդ աշխատանքները:

Տեխնիկական կուլտուրաների մշակությամբ զբաղվող շրջանների կոլխոզների պատիվի գործն է բերքահավաքի աշխատանքների օրինակելի կազմակերպման միջոցով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի երեսունմեկերորդ տարեդարձը դիմավորել բամբակի, շաքարի ճակընդեղի, ծխախոտի և խորդենու բերքահավաքի պլանների կատարումով, հարազատ պետության հանդեպ ունեցած իրենց. պարտավորությունների կատարումով:

Գ. ԱՋԱՐՅԱՆ

(Հայկ. ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրի տեղակալ)

---

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ

## ՆՈՐԱՎԱՆԻ ԿՈԼԽՈԶԻ ԱՌԱՋԱՎՈՐ ԱՆԱՍՆԱՊԱՀՆԵՐԸ

Պարտիայի և կառավարության, անձամբ ընկեր Ստալինի անմիջական օգնությունն ու հոգատարությունը անասնապահության զարգացման ու անասնապահների նկատմամբ ոգեշնչում և աշխատանքային սխրագործությունների է մղում սոցիալիստական անասնապահության ֆրոնտի աշխատողներին:

Սիսիանի շրջանի Նորավան գյուղի Կիրովի անվան կոլխոզի առաջավոր անասնապահները որոշեցին այդ հոգատարությանն ու օգնությանը պատասխանել արժանի կերպով:

1946 թվականին կոլխոզը պետությունից ստացավ փարթամ, խոտով ու ջրով առատ նոր արոտավայրեր՝ Իշխլու լեռան արևմտյան ստորոտում: Ունենալով այդպիսի նպաստավոր պայմաններ և հոգ տանելով անասնապահության լավագույն կադրերի ըստեղծման մասին, կոլխոզը ձեռնամուխ եղավ

սեփական հոտի վերարտադրության պետական առաջադրանքների անշեղ կենսագործմանը։

Ոչխարաբուծությունը Նորավանի կոլխոզի անասնապահության ամենաառաջատար ճյուղն է և այդ ճյուղի վրա էլ լուրջ ուշադրություն կենտրոնացվեց։ Ամենից առաջ կոլխոզի ղեկավարները և ոչխարապահ կոլխոզնիկները ձեռնարկեցին հոտի բեղմնավորման և ծնի կամպանիան լավ և անկորուստ կազմակերպելու գործը։ Յուրաքանչյուր 20 մայր ոչխարի համար առանձնացվեց մեկ հատ լավորակ արտադրող։ Հովիվները գիշեր ու ցերեկ հետևում էին, որպեսզի բոլոր ոչխարներն էլ զուգավորվեն։ Դրա հետ միասին նրանք առանձին հոգատարությամբ սկսեցին ոչխարների խնամքն ու կերակրումը։ Արդեն ծնի կամպանիայի սկզբին ֆերմայի բոլոր ոչխարներն էլ գտնվում էին գեր և առողջ վիճակում։ Այս միջոցառումները նախապայմաններ ստեղծեցին եղած մայր ոչխարներից ոչ միայն առողջ, այլև շատերից զույգ ծին ստանալ։

Հատուկ խնամք և հոգատարություն կազմակերպվեց նորածին գառների նկատմամբ։ Նրանց համար առանձնացվեցին և պատրաստվեցին փափուկ, մաքուր ու լուսավոր



տեղեր։ Ծնից 20 օր հետո գառների խնամքը հանձնվեց գառնարածներին, որոնք մինչև գառների մեկ տարեկան դառնալը և ընդհանուր հոտին հանձնելը պատասխանատու են նրանց խնամքի ու պահպանման համար։ Սարում եղած ժամանակ ֆերմայի հոգսերից մեկն է նաև նորածին գառների արոտի կազմակերպումը։ Որպեսզի գառները երկար ճանապարհ չկտրեն և չհոգնեն յայլաղում նրանց համար առանձնացվում են ամենամոտ և ամենահյութալի արոտավայրերը։

Հոտի ամառային արոտի հաջող կազմակերպման հետ միասին, խոշոր նշանակություն ունի ձմեռային արոտի կազմակերպումը։ Նորավանի կոլխոզի ոչխարաբուծական ֆերմայի համար ձմեռնային արոտավայրեր են հատկացված Ադրբեջանական ՍՍՌ-ի Աղջաբադի շրջանում։ Այստեղ ամեն գարնան, նախքան ֆերմայի տեղափոխումը, կոլխոզը հոգ է տանում ոչխարների ձմեռումը հաջող նախապատրաստելու, հնարավոր կորուստները կանխելու համար։ Ուղարկվող հատուկ բրիգադայի միջոցով ժամանակին վերանորոգվում են ֆերմայի բոլոր անհրաժեշտ շենքերը՝ հովիվների բնակարանները, պահեստները, ոչխարների փարախները։

Չնայած այն բանին, որ ձմեռանոցում

միշտ էլ եղանակը նպաստավոր է լինում հոտի արոտի անընդհատ կազմակերպման համար, սակայն հաճախ, ճիշտ է կարճատև, լինում են նաև աննպաստ եղանակներ՝ սառնամանիքներ, բքաշունչ օրեր։ Հենց այս ժամանակ է, որ տեղի են ունենում ոչխարների զգալի կորուստներ, ինչպես այդ երբեմն պատահում է հարևան գյուղերի կոլխոզների հոտերի հետ։ Անակնկալի չգալու և բնական պատահարների դեմ պայքարելու նպատակով, կոլխոզի ղեկավարությունը շարունակ հոգ է տանում իր հոտի ձմեռանոցում կոշտ կերի առնվազն 15-20 օրվա պաշար պատրաստելու մասին։ Անցյալ տարի կոլխոզը Աղջաբաղի իր ձմեռանոցում ցանել էր 10 հեկտար առվույտ և փոխադրել այնտեղ 2 և կես տոննա գարի, իսկ գարնանից ջրվել ու պահպանվել էին բոլոր արոտավայրերը։ Այս միջոցառումները և ժամանակին ձեռնարկած հաջող նախապատրաստական աշխատանքները օգնում են ֆերմային ոչխարների ձմեռումը, այնտեղ ծնի կամպանիան հաջող ու անկորուստ անցկացնելու ինչպես նաև գառների խնամքն ու պահպանումը լավ կազմակերպելու համար։

Կոլխոզի սկզբնական պարտիական կազմակերպությունը մասսայական-քաղաքա-



կան, դաստիարակչական լուրջ աշխատանք է կատարում ֆերմայի աշխատողների մեջ։ Ժամանակին բացատրվում ու մասսայականացվում են պարտիայի և կառավարության բոլոր որոշումները, միջազգային կարևորագույն հարցերը։ Ինչպես կոլխոզային արտադրության մյուս բնագավառներում, այնպես էլ այստեղ կոմունիստները գտնվում են ավանգարդային դերում։ Պարտկազմակերպությունն ու կոլխոզի վարչությունը հոգ են տարել ֆերման ապահովել լավագույն, փորձված կադրերով։ Դրանց թվին են պատկանում հովիվներ՝ Լևոն Քարամյանը, Մեսրոպ Յաղուլյանը, ֆերմայի վարիչ՝ Ղեվոնդ Բաբաջանյանը, և ուրիշները։ Ֆերմայի նկատմամբ առանձնակի հոգատարություն և կոնկրետ ղեկավարություն է ցույց տալիս հմուտ ու փորձված կոլխոզի նախագահ՝ ընկ. Համազ Մինասյանը։

Շնորհիվ լայնորեն ծավալված սոցիալիստական մրցության, քաղաքական-դաստիարակչական աշխատանքների և կոլխոզային օրինակելի Կանոնադրությամբ նախատեսված խրախուսական միջոցների ճիշտ կիրառման, ոչխարաբուծական ֆերմայի անասնապահները 1947 թ. հասան փայլուն ցուցանիշների։ Պետական առաջադրանքների

համաձայն 1947 թ. ֆերման պետք է ունենար ամեն հասակի 3700 գլուխ ոչխար, փաստորեն ստացվեց 4146 գլուխ։ Նախատեսնված պլանով 100 մայր ոչխարից պետք է ստացվեր 95 գառ, սակայն փաստորեն ըստացվեց 121 գառ։ Այսպիսով ֆերմայի ունեցած 1402 մայր ոչխարից ստացվեց 1691 կենդանի, առողջ գառ, որոնցից 289 հատը զույգ և երկրորդ ծնի միջոցով։ Ըստ պետական պլանի մորից անջատվելու պահին յուրաքանչյուր գառի միջին քաշը պետք է կազմեր 35 կիլոգրամ, սակայն անասնապահների հոգատար, նվիրված աշխատանքի շնորհիվ նրանց միջին քաշը կազմեց 40,2 կիլոգրամ։ Այնուհետև յուրաքանչյուր ոչխարից 1,9 կիլոգրամ բրդի դիմաց կոլխոզն ստացավ 2,5 կիլոգրամ բուրդ, իսկ ֆուրաժային ոչխարի 30 լիտր կաթի դիմաց 35 լիտր։

Ոչխարաբուծության զարգացման պետական առաջադրանքները օրինակելի կատարելու և աշխատանքի կազմակերպման գործում հիանալի ձեռներեցություն ցուցաբերելու համար, Սովետական կառավարությունը բարձր գնահատեց Սիսիանի շրջանի Նորավան գյուղի Կիրովի անվան կոլխոզի ոչխարաբուծական ֆերմայի անասնապահների ու ղեկավարների աշխատանքը և մի խումբ ա-



ռաջավորների արժանացրեց բարձր պարգևի։

Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր ու պատվավոր կոչման արժանացան կոլխոզի նախագահ՝ Համազ Մինասյանը, ֆերմայի վարիչ՝ Ղևոնդ Բաբաջանյանը և ավագ հովիվ՝ Մեսրոպ Յաղուբյանը, իսկ հովիվ Լևոն Քարամյանը պարգևատրվեց Լենինի շքանշանով։

***

Նորավանի կոլխոզի առաջավոր անասնապահները չեն հանգստանում ձեռք բերած նվաճումներով։ Կրկնապատկելով իրենց ուժերն ու եռանդը, նրանք ձգտում են ավելի փայլուն ցուցանիշների հասնել այս տարի։ 1948 թվի նախնական տվյալներն ասում են, որ պայքարն այդ ցուցանիշների համար հաջող է ընթանում։ Արդեն կատարված են այս տարվա կաթնատվության և բրդատվության պետական առաջադրանքները։ Ոչխարների 1948 թ. հունվար-փետրվար ամիսների ծինը հաջող է անցկացված։ Ֆերմայի առաջավոր անասնապահները եռանդուն, նախապատրաստական աշխատանքներ են կատարում հաջող անցկացնելու նաև նոյեմբեր-դեկտեմբեր ամիսների ծնի կամպանիան և հաղթանակով դուրս գալ ծավալված սոցիալիստական մրցությունից։

Վ. ԲԶՆՈՒՆԻ

## ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

(ՏԵՂԵԿԱՆՔ)

*Ղրիմի կոնֆերենցիայի որոշման և ապա Սովետական Միության, Մեծ Բրիտանիայի, Միացյալ Նահանգների ու Ֆրանսիայի կառավարությունների միջև 1945 թվականի հունիսի 5-ին կնքված համաձայնագրի հիման վրա Գերմանիայում ստեղծվեցին օկուպացման չորս գոտիներ։ Ըստ որում Գերմանիայի մայրաքաղաք Բեռլինը նշանակվեց չորս տերությունների ներկայացուցիչներից կազմված Վերահսկիչ խորհրդի նստավայր, որի կապակցությամբ քաղաք մտցվեցին Գերմանիան օկուպացնող չորս տերությունների զորքերը։ Ստորև տպագրվում է Գերմանիայի օկուպացման չորս գոտիների և նրանց վարչա-քաղաքական կառուցվածքի նկարագրությունը։*



### ՕԿՈՒՊԱՑՄԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԳՈՏԻ

Տարածությունը կազմում է 121 հազար 600 քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝ 17,3 միլիոն մարդ։ Գոտու մեջ մտնում են նախկին պրուսական Բրանդենբուրգ, Սաքսոնիա պրովինցիաները և Թյուրինգիա, Մեկլենբուրգ, Սաքսոնիա ու Անհալտ հողերը։ Ներկայումս գոտին կազմված է հինգ հողերից.

1. Մեկլենբուրգի հող (գլխավոր քաղաքն է Շվերինը)։
2. Բրանդենբուրգի հող (գլխավոր քաղաքն է Պոտսդամը)։
3. Սաքսոնիա—Անհալտի հող (գլխավոր քաղաքն է Հալլեն)։
4. Սաքսոնիայի հող (գլխավոր քաղաքն է Դրեզդենը)։
5. Թյուրինգիայի հող (գլխավոր քաղաքն է Վեյմարը)։

Ինքնավարության ներկայացուցչական օրգանները կազմվեցին 1946 թվականի հոկտեմբերին, դեմոկրատական ընտրությունների միջոցով։ Գործադիր իշխանությունն իրագործում են կառավարությունները որոնք պատասխանատու են լանդտագների առջև։ Կառավարությունների գլուխ կանգնած են՝

Մեկլենբուրգում— Վիլհելմ Հեկկերը, Բրանդենբուրգում—Կարլ Շտեյնհոֆը (երկուսն էլ Գերմանիայի միասնական սոցիալիստական պարտիայից), Սաքսոնիա-Անհալտում— դոկտոր Ֆրիդրիխ Հյուբեները (լիբերալ-դեմոկրատական պարտիայից), Սաքսոնիայում— Մաքս Զեյդևիցը, Թյուրինգիայում— Վերներ Էգգերատը (երկուսն էլ Գերմանիայի միասնական սոցիալիստական պարտիայից)։

Հողերի կառավարությունների տնտեսական գործունեությունն ամբողջ գոտու մասշտաբով կոորդինացիայի է ենթարկվում գերմանական տնտեսական հանձնաժողովի կողմից, որին գլխավորում է Հայնրիխ Ռաուն (Գերմանիայի միասնական սոցիալիստական պարտիայի անդամ)։

Գոտու գլխավոր քաղաքը և սովետական հրամանատարության նստավայրը Գերմանիայի մայրաքաղաք Բեռլինն է։

## ՕԿՈՒՊԱՑՄԱՆ ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ԳՈՏԻ

Տարածությունը կազմում է 97 հազար 246 քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝ 22,7 միլիոն մարդ։ Գոտին կազմված է նախկին պրուսական Շլեզվիգ— Հոլշտեյն, Հաննովեր, Վեստֆալիա պրովինցիաներից, Հե-



նասյան պրովինցիայի հյուսիսային մասից, Բրաունշվեյգ, Լիպպե, Շաումբուրգ-Լիպպե, Օլդենբուրգ հողերից և Համբուրգ ազատ քաղաքից։ Ներկայումս գոտին բաժանված է երեք հողերի.

1. Շլեզվիգ-Հոլշտեյնի հող (գլխավոր քաղաքն է Քիլը)։

2. Ստորին Սաքսոնիայի հող (գլխավոր քաղաքն է Հաննովերը)։

3. Հյուսիսային Հռենոս-Վեստֆալիայի հող (գլխավոր քաղաքն է Դյուսսելդորֆը)։

Համբուրգ ազատ քաղաքը ներկայացնում է առանձին հող։ Բրեմեն քաղաքի տերրիտորիան, մերձակա շրջանի հետ միասին, առանձնացված է իբրև ամերիկյան օկուպացման հատուկ հատված, քանի որ Բրեմենը ամերիկյան օկուպացիոն զորքերի մատակարարման գլխավոր նավահանգիստն է հանդիսանում։

Բրիտանական գոտու բնակչությունը 1946 թվականի սեպտեմբերին և 1947 թվականի ապրիլին լանդտագներ ընտրեց անգլիական իշխանությունների կողմից մշակված հակադեմոկրատական ընտրական օրենքի հիման վրա, որը սահմանափակում է դեմոկրատական ձախ պարտիաների ներկայացուցչությունը։ Առանձին հողերում կառավարու-

թյունները գլխավորում են՝ Շլեզվիգ-Հոլշ-
տեյնում — Հերման Լյուդեմանը (սոցիալ-
դեմոկրատ), Ստորին Սաքսոնիայում — Հին-
րիխ Կոպֆը (սոցիալ-դեմոկրատ), պատե-
րազմական հանցագործ, որի հանձնումն է
պահանջում Լեհաստանը, Հյուսիսային Հռե-
նոս-Վեստֆալյան հողում — Կարլ Առնոլդը
(քրիստոնեական դեմոկրատական միություն-
նից)։ Համբուրգի գլխավոր քաղաքագլուխն է
Մաքս Բրաուերը (սոցիալ-դեմոկրատ)։

Ամբողջ գոտում գերմանական վարչական
օրգանն է հանդիսանում այսպես կոչված՝
զոնալ խորհուրդը, որ անգլիական իշխանու-
թյունները ստեղծեցին 1946 թվակա-
նին։ Խորհուրդը ստեղծվեց օկուպացիոն ադ-
մինիստրացիայի կողմից, ընտրությունների
ժամանակ ձայների բաշխման համապատաս-
խան։ Ներկայումս խորհրդի դերն ամբողջա-
պես հանձնված է անգլո-ամերիկյան միաց-
յալ գոտու այսպես կոչված տնտեսական
խորհրդին։

Գոտու քաղաքական կենտրոնն է Համբուր-
գը, բրիտանական հրամանատարության
նստավայրն է Բադ-Օյնհաուզենը։

## ՕԿՈՒՊԱՑՄԱՆ ԱՄԵՐԻԿՅԱՆ ԳՈՏԻ

Տարածությունը կազմում է 116 հազար



670 քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝
16,7 միլիոն մարդ։

Գոտին կազմված է նախկին պրուսական
Հեսսեն պրովինցիայից և Բավարիա, Հեսսեն
Վյուրտեմբերգ ու Բադեն հողերից։ Ներկա-
յումս գոտին բաժանվում է երեք հողերի.

1. Հեսսենի հող (գլխավոր քաղաքն է Մայ-
նի Ֆրանկֆուրտը)։

2. Բավարիայի հող (գլխավոր քաղաքն է
Մյունխենը)։

3. Վյուրտեմբերգ-Բադենի հող (գլխավոր
քաղաքն է Շտուտգարտը)։

Բացի դրանից, առանձին հողի իրավունք-
ներով գոտու մեջ է մտնում վերը հիշատակ-
ված Բրեմեն քաղաքի հատվածը։

Կառավարման գերմանական օրգանները
կազմված են 1946 թվականի նոյեմբերին։
Ընտրությունները անցկացվում էին մասսա-
ների դեմոկրատական նախաձեռնությունը
խիստ սահմանափակող պայմաններում։
Ձախ պարտիաների ցուցակների գրանցմանն
արգելքներ էին պատճառվում։

Հողերի կառավարությունները գլխավո-
րում են՝ Հեսսենում — Խրիստիան Շտոկը
(սոցիալ-դեմոկրատ), Բավարիայում — Հանս
Էխարդը (քրիստոնեական սոցիալական
միությունից), Վյուրտեմբերգ-Բադենում —

Ռեյնոլդ Մայերը (դեմոկրատական ժողովրդական պարտիայից), Բրեմենում — Վիլհելմ Կայզենը (սոցիալ-դեմոկրատ)։

1945 թվականի նոյեմբերին ամերիկյան իշխանությունների ցուցումով գոտու բոլոր հողերի կառավարությունների ներկայացուցիչներից կազմակերպվեց այսպես կոչված՝ հողերի խորհուրդ, որը կոորդինացնում էր առանձին կառավարությունների գործունեությունը։ Ներկայումս նրա ֆունկցիաները հանձնված են Բիզոնիայի տնտեսական խորհրդին։

Գոտու գլխավոր քաղաքն է Մայնի Ֆրանկֆուրտը։ Ամերիկյան հրամանատարության նստավայրը գտնվում է Հեյդելբերգում։

### Անգլիական և ամերիկյան գոտիների կառավարման միավորված օրգանները։

1946 թվականի դեկտեմբերին Նյու-Յորքում ստորագրվեց անգլո-ամերիկյան համաձայնագիր այսպես կոչված՝ «օկուպացման անգլիական ու ամերիկյան գոտիների տնտեսական միավորման» մասին։ Այդ առաջին քայլն էր Գերմանիայի պառակտման ճանապարհին, պառակտում, որ ամերիկյան ու անգլիական արտաքին քաղաքականությունն իրականացնում է Գերմանիայի արևմտյան



գոտիներում իր ռազմա-քաղաքական պլացդարմը ստեղծելու նպատակով։

1947 թվականի հունիսին նյու-յորքյան համաձայնագիրն ընդարձակվեց։ Միավորված գոտու ղեկավարման համար ստեղծվեց տնտեսական խորհուրդ — օրենսդիր մի օրգան, կազմված հողերի լանդտագների կողմից ընտրվող 54 անդամից։ Իբրև գործադիր օրգան, տնտեսական խորհրդին կից ստեղծվեց գործադիր խորհուրդ։

1948 թվականի սկզբներին անգլո-ամերիկյան իշխանությունները հետագա քայլերը կատարեցին Արևմտյան Գերմանիան իբրև սեպարատ պետություն ձևավորելու ուղղությամբ։ Տնտեսական խորհուրդը վերակազմվեց, ստեղծվելով երկպալատանի մի օրգան։ Նրա անդամների թիվը ավելացվեց մինչև 104-ի, ֆունկցիաներն ընդլայնվեցին։ Ստեղծվեց նաև գերագույն դատարան։ Տնտեսական խորհրդին կից ներկայումս գոյություն ունի արևմտյան գոտիների մարիոնետային կառավարությունը — վարչական խորհուրդը։ Այն գլխավորեց նախկին նացիստ, գերմանական կաթոլիկական ռեակցիայի լիդեր Բրյունինգի գործակից դոկտոր Պյունդերը։

Ներկայումս, արևմտյան տերությունների

լոնդոնյան սեպարատ կոնֆերենցիայի որոշումների համաձայն, նախապատրաստվում է Գերմանիայի տրոհման վերջնական ձևակերպումը։ Սեպտեմբերին նախատեսվում է հրավիրել արևմտյան երեք գոտիների հիմնադիր ժողով, սեպարատ արևմտա-գերմանական «պետության» կոնստիտուցիան ընդունելու համար։

Տնտեսական խորհրդի նստավայրն է Մայնի Ֆրանկֆուրտը, որն էլ հենց ենթադրվում է դարձնել ապագա «պետության» մայրաքաղաքը։

## ՕԿՈՒՊԱՑՄԱՆ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ԳՈՏԻ

Տարածությունը կազմում է 58 հազար 955 քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝ 5,9 միլիոն մարդ։

Գոտին կազմված է Հռենոսյան պրովինցիայի հարավային մասից, Պֆալց, Հոհենցոլլերն-Զիգմարինգեն հողերից և Վյուրտեմբերգի ու Բադենի հողերի հարավային շրջաններից։ Ներկայումս գոտու կազմի մեջ մտնում են երեք հողեր.

1. Ռեյնլանդ-Պֆալցը (գլխավոր քաղաքն է Մայնցը)։

2. Հարավային Բադենը (գլխավոր քաղաքն է Ֆրեյբուրգը)։



3. Հարավային Վյուրտենբերգ-Հոհենցոլլերնը (գլխավոր քաղաքն է Թյուբինգենը)։

Սաարի մարզը (գլխավոր քաղաքն է Սաարբրյուկկեն) 1947 թվականի նոյեմբերից ֆրանսիական իշխանությունների սեպարատ որոշմամբ մաքսային սահմանով անջատված է մնացած գոտուց և տնտեսական տեսակետից միակցված է Ֆրանսիային։

Ֆրանսիական օկուպացիոն իշխանությունները, որոնք գոտում կիրառում են գաղութային տնօրինության քաղաքականություն, երկար ժամանակ թույլ չէին տալիս, որ կազմվեն գերմանական ինքնավարության օրգաններ։ Լանդտագների ընտրություններն անցկացվեցին միայն 1947 թվականի մայիսին։ Մինչև այդ, հողերը ղեկավարում էին այսպես կոչվող «պետական քարտուղարությունները», որոնք նշանակվում էին զինվորական իշխանությունների կողմից։ Ներկայումս հողերում կազմված են կառավարություններ, որոնց ղեկավարում են՝ Ռեյնլանդ-Պֆալցի հողում— Պետեր Ալտմայերը, Հարավային Բադենում— Լեո Վոլեբը, Վյուրտեմբերգ-Հոհենցոլլերնում— Գեբխարդ Մյուլլերը (բոլորն էլ քրիստոնեական դեմոկրատական միությունից)։

Ամբողջ գոտու մասշտաբով գերմանական ինքնավարության օրգաններ չկան։ Գոտու քաղաքական-տնտեսական կենտրոնն է Մայնցը. Ֆրանսիական օկուպացիոն իշխանությունների նստավայրը Բադենն է։

## ՄԵԾ ԲԵՌԼԻՆ

Տարածությունը կազմում է 900 քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝ 3,2 միլիոն մարդ։

Քաղաքի 20 քաղաքային ռայոններից սովետական հատվածի մեջ մտնում է 8 ռայոն (արևելյան մասը), անգլիական հատվածի մեջ— 3 ռայոն (արևմտյան մասը), ամերիկյան հատվածի մեջ— 7 ռայոն (հարավ-արևմտյան մասը), ֆրանսիական հատվածի մեջ 2 ռայոն (հյուսիս-արևմտյան մասը)։

Բեռլինի մագիստրատն ընտրվեց 1946 թվականի հոկտեմբերի 20-ին։ Քաղաքագլխի պարտականությունները կատարում է Լուիզա Շրեդերը (սոցիալ-դեմոկրատ)։

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

1. «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին» (ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1948 թ. ապրիլի 19-ի որոշումը, հավելվածներով)։ Հայպետհրատ, 1948 թ., տիրաժ 3.000 օրինակ, 171 էջ, գինը՝ 8 ռ.։

Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի հրատարակչությամբ՝

2. «Աշխատություններ» (Հայաստանի Պետական Պատմական Թանգարանի, հատոր առաջին)։ Տիրաժ 700 օրինակ, 301 էջ, գինը՝ 20 ռուբլի, 1948 թ.։

3. Մ. ՇԱՀԲԱԶՅԱՆ.— «Բամբակի բարձր բերքի համար»։ Տիրաժ 1.500 օրինակ, 55 էջ, գինը՝ 3 ռուբլի, 1948 թ.։

4. Մ. ՇԱՀԲԱԶՅԱՆ.— «Ինչպես ստացվեց շաքարի ճակնդեղի բարձր բերքը»։ Տիրաժ 1.500 օրինակ, 45 էջ, գինը՝ 3 ռուբլի, 1948 թ.։

Հայկական ՍՍՌ Պետական Հեռակա Մանկավարժական Ինստիտուտի հրատարակությամբ՝



ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ
ԾՈՎ
ԲԱԼԹԻԿ ԾՈՎ
Քիլ
ՇԼԵԶՎԻԿ
ՀՈԼՇՏԵՅՆ
Լյուբեկ
ՄԵԿԼԵՆԲՈՒՐԳ
Համբուրգ
Շվերին
ՍՈՎԵՏԱԿԱՆ
ԲՐԱՆԴԵՆԲՈՒՐԳ
Բրեմեն
ՍՏՈՐԻՆ ՍԱԿՍՈՆԻԱ
ԲՐԻՏԱՆԱԿԱՆ
ԲԵՌԼԻՆ
Պոտսդամ
Մինդեն
Հաննովեր
Բադ Օյնհաուզեն
ԳՈՏԻ
ՍԱԿՍՈՆԻԱ-ԱՆՀԱԼՏ
ԳՈՏԻ
ՀՅՈՒՍ. ՀՌԵՆՈՍ-
Դյուսելդորֆ
ՎԵՍՏՖԱԼԻԱ
Աախեն
Կասսել
Հալլե
Լայպցիգ
ՍԱԿՍՈՆԻԱ
Դրեզդեն
Էրֆուրտ
Վեյմար
ԹՅՈՒՐԻՆԳԻԱ
ՀԵՍՍԵՆ
ՌԵՅՆԼԱՆԴ
ՊՖԱԼՑ
Ֆրանկֆուրտ
Մայնց
ԱՄԵՐԻԿՅԱՆ
Ֆրանսիական
Հեյդելբերգ
Նյուրնբերգ
ՎՅՈՒՐՏԵՄԲԵՐԳ
ԲԱԴԵՆ
Սաարբրյուկկեն
ՍԱԱՐԻ ՄԱՐԶ
ԲԱՎԱՐԻԱ
Շտուտգարտ
Բադեն
Տյուբինգեն
ՎՅՈՒՐՏԵՄԲԵՐԳ-
ՀՈՀԵՆՑՈԼԼԵՐՆ
ՀԱՐ.
ԳՈՏԻ
Ֆրեյբուրգ
ԲԱԴԵՆ
ԳՈՏԻ
Մյունխեն
100 կմ
Գերմանիայի պետական սահման
Օկուպացիոն գոտիների սահման
Երկրամասերի սահման

Գինը 50 կոպ.

5. Ակադեմիկոս Ա. Ի. ՏՐԱԽՏԵՆԲԵՐԳ.— «Կապիտալիստական վերարտադրությունը և տնտեսական ճգնաժամերը»: Տիրաժ 1.500 օրինակ, 162 էջ, գինը՝ 8 ռուբլի, 1948 թ.:

6. Տնտես. գիտութ. դոկտոր Մ. Լ. ՎԻԳՈԴՍԿԻ.— «Կապիտալի շրջապտույտն ու պտույտը» (ՀամԿ(բ)Պ Կենտկոմին կից Բարձրագույն պարտիական դպրոցում կարդացած դասախոսությունների սղագրությունը): Տիրաժ 1.500 օրինակ, 64 էջ, գինը՝ 4 ռուբլի, 1948 թ.:

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

ՎՖ 04193 Պատվեր № 668 Տիրաժ 9.300
Ստորագրված է տպագրության 27/IX 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора